# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ





ՆՈՅԵՄԲԵՐ

22

1964

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ



Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

**Адрес редакции** — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 22
ՆՈՅԵՄԲԵՐ
1964

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՐՏԻԱՆ

Մեծ և փառավոր ուղի է անցել մեր պարտիան։ Ցա-
րական ինքնակալության դժնդակ պայմաններում կրե-
լով անհամար տառապանքներ, անցնելով փայլուն հաղ-
թանակների ու ժամանակավոր պարտությունների բո-
վով, կոմունիստական պարտիան իր կատարած մեծ
գործերով ապացուցեց իր անսահման նվիրվածությու-
նը ժողովրդին։ Այն ժամանակ, երբ մանր բուրժուա-
կան, նացիոնալիստական պարտիաները դավաճանե-
ցին բանվորներին ու գյուղացիներին և գլորվեցին հա-
կառևոլյուցիայի լագերը, կոմունիստական պարտիան
իր շուրջը համախմբելով պրոլետարիատին և աշխա-
տավոր գյուղացիության մի զգալի մասին, գրոհի գնաց
ցարիզմի դեմ և համաշխարհային-պատմական հաղ-
թանակ տարավ։ Սոցիալիստական ռևոլյուցիայից հե-
տո, քաղաքացիական պատերազմի և երկրում սոցիա-
լական վերափոխությունների դժվարին տարիներին
պարտիայի ետևից գնացին գյուղացիության և ինտե-
լիգենցիայի հիմնական մասսաները։ Իսկ երբ պար-
տիան վերջնականապես մեր երկրում ապահովեց սո-
ցիալիզմի հաղթանակը, ամրապնդեց սովետական հա-
սարակության միասնությունն ու սովետական ժողո-
վուրդների եղբայրական բարեկամությունը, նա դար-
ձավ ամբողջ ժողովրդի պարտիան։

Սովետական մարդիկ բազմամյա պատմական փոր-
ձով գիտեն, որ բոլոր հաջողություններն ու նվաճումնե-
րը ձեռք են բերվել կոմունիստական պարտիայի ղե-
կավարությամբ։ Պարտիան առասպելական Անթեյի

նման իր ուժերը քաղում է ժողովրդից, իմաստնանում է ժողովրդի ստեղծարար փորձով, ժողովուրդը սիրում ու հարգում է իր պարտիային, հավատում է պարտիային, ընթանում նրա ետևից։ Ահա թե ինչու կոմունիստական պարտիայի մեծ գաղափարները դարձել են ժողովրդի գաղափարները, պարտիայի ծրագիրը դարձել է սովետական ժողովրդի գործունեության ծրագիրը։ «Ամեն ինչ հանուն մարդու, ամեն ինչ մարդու բարօրության համար»— այս է այն մեծ լոզունգը, որ մոտեցնում, ի մի է ձուլում պարտիային ու ժողովրդին։

Սակայն որքան վեհաշուք է կոմունիստական գալիքը և որքան էլ ոգեշնչող է նոր հասարակարգի կառուցումը, յուրաքանչյուր մարդ գիտի, որ այն հեշտությամբ չի տրվում։ Կոմունիզմը կառուցվում է ժողովրդի աշխատանքով և ժողովրդի համար. բայց այդ ճանապարհին կան շատ դժվարություններ, շատ չլուծված հարցեր։ Նոր հասարակության կառուցման դեռևս փորձով չհարթված ճանապարհով անցնելու համար անհրաժեշտ է խորամուխ լինել հասարակական կյանքի երևույթների մեջ, լավ գիտենալ և ճշտորեն կիրառել հասարակության զարգացման օրինաչափությունները։ Այդ պահանջներին էլ համապատասխանում է կոմունիստական պարտիայի քաղաքականությունը, որովհետև այն ղեկավարվում է ոչ թե առանձին մարդկանց կամ խմբերի պատահական մղումներով և կամ կյանքից կտրված սխեմաներով, այլ հենվում է հասարակության զարգացման մարքսիստական-լենինյան տեսության ստեղծագործական կիրառման վրա։ Կոմունիստական պարտիան մանրազնին կերպով ուսումնասիրում է հասարակական կյանքի կոնկրետ փաստերը, վերլուծում իրականության ծավալման հնարավոր ուղղությունները, ի հայտ է բերում ժողովրդի կենսական պահանջմունքները և այդ հիման վրա երկրի առջև դնում է նոր, հերթական խնդիրներ։ Այս բանի ցայտուն վկայությունն է ՍՄԿՊ XX, XXI և XXII համագումարներում կոլեկտիվ կերպով մշակված գլխավոր փիծը՝ կոմունիզմի կառուցման ծրագիրը։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, երբ հասարակական արտադրության և կյանքի բոլոր ոլորտներում [illegible] չափերով ընդլայնվում է վերափոխումների ծավալը, էլ ավելի է աճում կոմունիստական պարտիայի դերն ու նշանակությունը, բարձրանում է նրա բոլոր կազմակերպությունների, յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվությունը տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների հաջող կատարման համար։ Կոմունիզմի կառուցման շահերն այսօր պահանջում են ստեղծել այնպիսի իրադրություն, որ առավելագույն չափով զարգանան երկրի ու պարտիայի գործերի վիճակի համար յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվության զգացումը, ընկերական քննադատությունն ու ինքնաքննադատությունը, պարտիական կյանքի լենինյան նորմերի ամեն մի խախտման նկատմամբ անհաշտությունը։

Սովետական Միության կոմունիստական պարտիայի համաժողովրդական բնույթն արտահայտվում է ոչ միայն ժողովրդի կենսական շահերից բխող նրա քաղաքականության, այլև իր թվական կազմի, գործունեության ձևերի ու սկզբունքների մեջ։

Կոմունիստական պարտիայի շարքերում ներկայումս կան ավելի քան 11 միլիոն համախոհ կոմունիստներ, այսինքն՝ մեր երկրի յուրաքանչյուր 14 չափահաս բնակչից մեկը պարտիայի անդամ է։ Սա ինքնըստինքյան վերցրած մի հզոր բանակ է։ Սակայն պարտիայի ուժը միայն դրանում չէ։

Կոմունիզմի թշնամիները փորձում են մեր պարտիան պատկերել որպես «ընտրյալների» պարտիա, որն իբր կազմված է պարտիական և պետական աշխատողներից։ Սակայն իրականությունը հօդս է ցնդեցնում բուրժուական գաղափարախոսների այդ կեղծիքը։ Սովետական կոմունիստների ավելի քան երկու երրորդը զբաղված է նյութական արտադրության ոլորտում։ Վերջին տարիներին զգալիորեն աճել է բանվորների և կոլտնտեսականների ընդունելությունը պարտիայի շարքերը։ Ինչպես ցույց է տալիս պարտիայի թվական կազմի վերլուծությունը, նրա անդամների կեսից ավելին բանվորներ և կոլտնտեսականներ են, իսկ տարբեր կազմակերպությունների, ձեռնարկությունների, հիմնարկների ղեկավարների թիվը հասնում է ընդամենը 10,2 տոկոսի։ Պարտիայի մեջ զգալի կշիռ ունեն նաև տեխնիկական ինտելիգենցիան, գիտության, լուսավորության, առողջապահության, արվեստի և գրականության աշխատողները։ Ինչպես տեսնում ենք, պարտիա-

յի կազմն ամբողջությամբ համապատասխանում է մեր հասարակության սոցիալական կառուցվածքին։

Կոմունիստական պարտիան հաստատուն կուրս է վերցրել՝ ամենուրեք ընդլայնել ներպարտիական դեմոկրատիան, պարտիական օրգանների աշխատանքին մասնակցող պարտիական ակտիվի թիվը, դրանով իսկ օրինակ հանդիսանալ հասարակության կոմունիստական ինքնավարության անցնելու գործում։ Այդ բանն ամենից առաջ արտահայտվում է պարտիական աշխատանքում հասարակական հիմունքների արմատավորման մեջ։

Ներկայումս պարտիական աշխատանքում հասարակական հիմունքներով ակտիվ աշխատանք են ծավալել հարյուր հազարավոր կոմունիստներ։ Պարտիական կազմակերպությունները ունենալով այդպիսի օգնականներ, ավելի մոտիկից են շփվում ժողովրդի հետ, ավելի խորն ու բազմակողմանիորեն են բացահայտում հասարակության պահանջմունքները, հետևաբար ավելի մեծ գործիմացությամբ կարող են ուղղություն տալ կյանքին։ Կոմունիստական պարտիան որպես ղեկավար ուժ է հանդես գալիս այնպիսի մասսայական կազմակերպություններում, ինչպիսիք են սովետները, արհմիությունները, կոմերիտմիությունը, կոոպերացիան։

Մեր պարտիայի կենսունակության, նրա ժողովրդայնության ակունքներից մեկն էլ այն է, որ նա զգաստ է նայում կյանքին, չի արբենում հաջողություններից և աչք չի փակում թերությունների առաջ։ Այսպիսի մոտեցումը թույլ է տալիս ժամանակին նկատել և հաջողությամբ լուծել հասունացած հարցերը, կանխատեսել և վերացնել առաջացող դժվարությունները, ուշադրությունը կենտրոնացնել չլուծված խնդիրների վրա, ավելի վստահորեն առաջ շարժվել։

Բոլորին հայտնի է, թե ինչպիսի դեր խաղաց ՍՄԿՊ XX համագումարը, որը մերկացրեց մարքսիզմ-լենինիզմին խորթ անհատի պաշտամունքի գաղափարախոսությունն ու պրակտիկան և մեր պարտիայի կյանքում լենինյան նորմաների վերականգնման սկիզբը դրեց։ XX համագումարի լենինյան կուրսի իրականացման ճանապարհին կարևոր ուղենիշ հանդիսացավ այս տարվա հոկտեմբերի 14-ին կայացած ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի պլենումը, որը տոգորված էր կոլեկտիվ ղեկավարության, լենինյան պատգամների նկատմամբ հավատարմության ոգով։

Պարտիան չունի այլ շահեր, քան ժողովրդի, կոմունիզմի կառուցման շահերը։ Երբեք և ոչ մի բանում չնահանջել ժողովրդի շահերի, կոմունիզմի համար մղվող պայքարից։

Ժողովրդին միշտ հարազատ ծառայելու, նրա շահերը մինչև վերջ պաշտպանելու հիանալի օրինակ հանդիսացավ ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը։

Կոմունիստական շինարարության ասպարեզում պարտիայի և նրա տեղական օրգանների ղեկավար դերն ուժեղացնելու, յուրաքանչյուր մարզի, երկրամասի և ռեսպուբլիկայի տնտեսական ու կուլտուրական զարգացման խնդիրներն ավելի հաջող լուծելու նպատակով պլենումն անհրաժեշտ համարեց վերադառնալ պարտիական կազմակերպությունները և նրանց ղեկավար օրգանները տերիտորիալ-արտադրական հատկանիշով կառուցելու սկզբունքին, որը որպես կարևորագույն բաղկացուցիչ մաս մտել է պարտիայի XXII համագումարի ընդունած ՍՄԿՊ կանոնադրության մեջ։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումներն արժանացան ամբողջ պարտիայի, ամբողջ սովետական ժողովրդի հավանությանն ու աջակցությանը։ Դրանք բխում են կյանքից, կոմունիստական շինարարության շահերից։ Այդ որոշումների հիմքում ընկած են մեր պարտիայի անսասան հավատարմությունը պարտիական ու պետական ղեկավարման լենինյան փորձված սկզբունքներին, խոր հոգատարությունը կոմունիստական շինարարության ասպարեզում պարտիայի ղեկավար դերը ուժեղացնելու նկատմամբ։

Ժողովուրդը ի դեմս լենինյան պարտիայի տեսնում է իր մարտական ավանգարդին, որը զինված է մարքս-լենինյան ռևոլյուցիոն տեսությամբ, սերտորեն կապված է մասսաների հետ, ապահովում է կոմունիզմի կառուցման ամբողջ աշխատանքի ճիշտ ղեկավարումը։ Մեր պարտիայի ուժն այն է, որ նա գոյություն ունի ժողովրդի համար և ժողովրդին ծառայելու մեջ է տեսնում իր գործունեության իմաստը, որ նա իր քաղաքականությամբ արտահայտում է ժողովրդի արմատական շահերը, սովետական հասարակության զարգացման կենսական պահանջմունքները։

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

## ԶՐՈՒՅՑ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ ԱՄՐԱՊՆԴՈՂ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ԿԱՊԵՐԻ ՄԱՍԻՆ

*Սովետական բազմազգ երկրի եղբայրական ժողովուրդների բարեկամությունը տարեցտարի ավելի է ամրապնդվում։ Այդ գործում խոշոր դեր է խաղում նաև մեր ժողովուրդների միջև կատարվող կուլտուրական նվաճումների փոխանակությունը։*

*Սովետական իրականության մեջ մի ժողովրդի կուլտուրայի նվաճումը դառնում է երկրի բոլոր ազգերի ու ազգությունների սեփականությունը։*

*Բոլոր ազգերի կուլտուրաները փոխադարձաբար լրացնում ու հարստացնում են միմյանց։ Այդ տեսակետից, ընթացիկ տարում նշանակալից իրադարձություններ տեղի ունեցան մեր ռեսպուբլիկայում։ Գաստրոլային համերգներով Հայաստան եկան Ուկրաինայի «Դնեպր» էստրադային նվագախումբը, Վրաստանի երիտասարդական պարի անսամբլը, Օսեթիայի երիտասարդական էստրադային նվագախումբը, Լենինյան Ղարաբաղի երգի-պարի անսամբլը և ուրիշներ։ Ինչպես միշտ, այնպես էլ այս տարի Ա. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի ակադեմիական թատրոնում և Հայֆիլհարմոնիայի մեծ դահլիճում հանդես եկան տարբեր քաղաքներից ժամանած մեծ թվով մենակատարներ։ Բազմաթիվ համերգային դահլիճներ մշտապես լեփ-լեցուն են եղել հանդիսատեսներով, որոնք հաճույք են ստացել հյուր եկած երաժշտական խմբերի ու մենակատարների համերգներից։ Այցելուները հիացմունքով դիտեցին Հայաստանի նկարիչների տանը բացված սովետական խոշորագույն գեղանկարիչների, քանդակագործների ու գրաֆիկների ստեղծագործությունների ցուցահանդեսը։ Ռեսպուբլիկայի հասարակայնության լայն շրջանները առաջին անգամ հնարավորություն ստացան ծանոթանալու սովետական կերպարվեստի ոսկե ֆոնդը մտած գործերի հետ։ Ցուցահանդեսի օրերին երկրի տարբեր քաղաքներից հյուր էին եկել մեծ թվով արվեստագետներ։ Նրանց թվում էին նաև*



*ցուցահանդեսում ներկայացված գործերի մի շարք հեղինակներ, որոնք ստեղծագործական մտքերի փոխանակություն ունեցան ռեսպուբլիկայի արվեստագետների և հանդիպումներ՝ աշխատավորների հետ։*

*Այս տարի Հայաստանի նկարիչների տանը հաճախ կարելի էր հանդիպել եղբայրական ռեսպուբլիկաներից եկած նկարիչների, որոնք մեծ հետաքրքրությամբ ուսումնասիրում էին հայ արվեստագետների գործերը։ Իրենց հերթին հայ նկարիչները հյուրընկալվել են եղբայրական Ռուսաստանի, Ուկրաինայի, Լատվիայի, Էստոնիայի և այլ ռեսպուբլիկաների նկարիչների կողմից։*

*Մեր օրերում ավելի ու ավելի է ամրապնդվում և իմաստավորվում ադրբեջանական և հայ ժողովուրդների բարեկամությունը։ Այս տարվա հունիս-հուլիս ամիսներին Բաքվի Մ. Ազիզբեկովի և Երևանի Գ. Սունդուկյանի անվան ակադեմիական թատրոնները փոխադարձ գաստրոլների մեջ էին գտնվում։ Այդ թատրոնների գաստրոլների փոխանակումը վաղուց սովորույթ է դարձել, որն ավելի է ամրապնդում երկու ռեսպուբլիկաների աշխատավորների բարեկամությունը։*

*Հայ և ադրբեջանական ժողովուրդների դարավոր բարեկամությունն ամրապնդող մասսայական մի միջոցառում ևս կազմակերպվեց այս տարի Երևանում։ Բաքվի ծովափնյա զբոսայգու կոլեկտիվը իր կուլտուր-մասսայական միջոցառումների մեկ օրը ցուցադրեց Երևանի 26 կոմիսարների անվան զբոսայգում, որտեղ օգոստոսի 23-ի կիրակի օրը հայտարարվեց «Բաքվի օր»։ Այստեղ բազմահազար այցելուներ դիտում էին Բաքվի աշխատավորների ձեռք բերած հաջողությունները ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի բնագավառում։*

*Քաղաքական-մասսայական այդ հետաքրքիր միջոցառմանը բարեկամական այցով հյուր էին եկել Բաքվի պարտիական-սովետական օրգանների ներկայացուցիչները, արդյունաբերական ձեռնարկությունների առաջավորները։ Երևանի աշխատավորների հետ նրանց հանդիպումները վերածվեցին ժողովուրդների բարեկամության վառ ցույցի։*

*Մեծ հիացմունք պատճառեց մեր ռեսպուբլիկայի աշխատավորներին էստոնական արվեստի և գրականության շաբաթը։ Հայ ժողովուրդը ավելի մոտիկից*

ծանոթացավ Էստոնիայի հարուստ, ինքնատիպ, հնադարյան՝ բայց և երիտասարդական նոր ուժով ծաղկող ու մեր սրտին այնքան մոտ կուլտուրային ու արվեստին։

Դարերի խորքից է գալիս էստոն և հայ ժողովուրդների բարեկամությունը։ Դեռևս XIX դարում, հայ ժողովրդի մեծ զավակ, Տարտուի համալսարանի սան Խաչատուր Աբովյանը և Էստոնիայում ապրող նրա բարեկամները հիմք դրեցին մեր երկու ժողովուրդների մերձեցմանը։ Հայաստանում էստոնական արվեստի, ինչպես նաև Էստոնիայում հայկական արվեստի շաբաթների անմոռանալի օրերին է՛լ ավելի հարազատ ու եղբայրական կապեր հաստատեցին հայ և էստոն ժողովուրդները։ Սովետական Հայաստանի աշխատավորները բազմիցս հնարավորություն են ունեցել դմայլվելու էստոնական արվեստի անվանի վարպետների ու երաժշտական խմբերի ելույթներով։ Մեր ռեսպուբլիկայում հրատարակվել են էստոն գրողների ու բանաստեղծների ստեղծագործությունները։ Ամուր փոխադարձ կապեր են հաստատել միմյանց հետ մեր ռեսպուբլիկաների արդյունաբերական ձեռնարկությունները, գյուղատնտեսության մասնագետները և գիտնականները։

Ռեսպուբլիկայում ավելի քան 150 հազար աշխատավորներ (չհաշված հեռուստադիտողներին և ռադիոլսողներին) հնարավորություն ունեցան մոտիկից ծանոթանալու էստոն ժողովրդի արվեստի հետ, որը հագեցված է ազատության, խաղաղության, բարեկամության վեհ գաղափարներով։

Մեր երկրում ամեն մի ժողովրդի ձեռք բերած հաջողություն՝ լինի այն տնտեսական բնագավառում, թե արվեստի կամ գրականության մեջ, դառնում է ընդհանուրի սեփականություն, համընդհանուր հարստություն։ Ահա թե ինչու մեծ նշանակություն ունեն բարեկամական սերտ կապերը, փոխայցելությունները ու փոխօգնությունը։ Այդ բոլորը մեծապես նպաստում են մեր երկրի ժողովուրդների լենինյան բարեկամության է՛լ ավելի ամրապնդմանն ու հետագա զարգացմանը։

ԱՐ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության կուլտլուս. հիմնարկների վարչության պետ



# ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

Քառասուն տարի առաջ մոնղոլ ժողովուրդը իր մարտական ավանգարդի՝ ժողովրդա-ռևոլյուցիոն պարտիայի գլխավորությամբ, տապալեց օտարերկրյա զավթիչների լուծը, կատարեց հակաիմպերիալիստական ժողովրդական ռևոլյուցիա և կանգնեց սոցիալիստական շինարարության ուղու վրա: 1924 թվականի նոյեմբերի 26-ին Մոնղոլիան հռչակվեց ժողովրդական ռեսպուբլիկա: Անկախ գոյության 40 տարիներին սովետական ժողովրդի եղբայրական օգնությամբ նախկին հետամնաց կիսաֆեոդալական Մոնղոլիան այսօր դարձել է զարգացած ագրարային-ինդուստրիալ երկիր:

⌗ *ՄԺՌ-ում ամբողջապես հաղթանակել են սոցիալիստական արտադրական հարաբերությունները։*

⌗ *Այսօր Մոնղոլիան ունի լեռնահանքային, վառելիքա-էներգետիկ, շինարարական, թեթև, սննդի և արդյունաբերության այլ ճյուղեր։*

⌗ *Մինչև ռևոլյուցիան Մոնղոլիան չուներ իր արդյունաբերությունը։ 1963 թվականին, 1962 թվականի համեմատությամբ, արդյունաբերության արտադրանքը աճել է 5,5 տոկոսով։ Այժմ արդյունաբերական արտադրանքը կազմում է ամբողջ ժողովրդական տնտեսության արտադրանքի 40 տոկոսից ավելին։*

⌗ *Առաջին (1948—1952) և երկրորդ (1953—1957) հնգամյակների տարիներին ՄԺՌ-ում կառուցվել է 17 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն, իսկ երրորդ հնգամյակի (1961—1965) առաջին երեք տարիներին՝ 81 ձեռնարկություն։*

⌗ *Այժմ ՍՍՌՄ-ի նյութա-տեխնիկական օգնությամբ ՄԺՌ-ում կառուցվում է ավելի քան 100 արդյունաբերական օբյեկտ։*

⌗ *Օրխոն, Խարա և Շարին-Գոլ գետերի շրջանում սովետա-մոնղոլական համատեղ էքսպեդիցիան հայտնաբերել է քարածխի, ցեմենտի արդյունաբերության համար հումքի հարուստ պաշարներ։*

⌗ *Այժմ եղբայրական սոցիալիստական երկրների օգնությամբ այդ հանքավայրերի բազայի վրա ստեղծվում է արդյունաբերական նոր շրջան։ ՍՍՌՄ-ը օգնում է գլխավոր արդյունաբերական օբյեկտների կառուցման աշխատանքներին, Չեխոսլովակիան օգնում է կառուցել ցեմենտի գործարան, իսկ Լեհաստանը՝ սիլիկատային աղյուսի գործարան։*

#Մեծ աշխատանքներ են տարվում Գոբի անապատի հարուստ ընդերքը օգտագործելու ուղղությամբ։ Երկրաբանները արդեն Գոբի անապատում հայտնաբերել են երկաթհանքի, նավթի, քարածխի և թանկարժեք քարերի հարուստ հանքավայրեր։ Անապատում արդեն ստեղծվել է առաջին նավթային արդյունաբերական կենտրոնը՝ Ցզունբային քաղաքը։

#Հաջողությամբ զարգանում է Մոնղոլիայի սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Խոշորագույն փոփոխություններ են տեղի ունեցել տնտեսության տրադիցիոն ճյուղի՝ անասնապահության բնագավառում։ ՍՍՌՄ-ի և մյուս սոցիալիստական երկրների եղբայրական օգնության շնորհիվ Մոնղոլիայի գյուղատնտեսությունը հագեցված է առաջավոր տեխնիկայով, մեխանիզացվում են աշխատատար պրոցեսները։

#Մոնղոլիայում այժմ կա 295 գյուղատնտեսական միավորում, 30 պետական տնտեսություն և ավելի քան 40 մեքենա-անասնապահական կայաններ, որոնք հագեցված են ժամանակակից գյուղատնտեսական տեխնիկայով։

#Մինչև 1921 թվականը Մոնղոլիայում հողագործությամբ չէին զբաղվում։ Խամ ու խոպան հողերի յուրացման շնորհիվ 1963 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ցանքատարածությունները ավելացել են 4 անգամ և այժմ կազմում են 455 հազար հեկտար։

#Անցյալ տարի հավաքվեց 20 միլիոն փութ ցորեն, որը Մոնղոլիայի պատմության մեջ առաջին անգամ լրիվ բավարարեց հացի գծով ռեսպուբլիկայի կարիքները։

#Եթե մինչև ռևոլյուցիան Մոնղոլիայում յուրաքանչյուր գյուղացիական ընտանիքի բաժին էր ընկնում միջին հաշվով 60 գլուխ անասուն, ապա այժմ այդ թիվը կազմում է 130։

#Մոնղոլիայում այժմ բնակչության յուրաքանչյուր շնչի համար տարեկան արտադրվում է 220 կիլոգրամ միս։

#ՄԺՌ-ում անասնապահության զարգացման համար մեծ նշանակություն ունի ռեսպուբլիկայի շատ շրջանների, հատկապես Գոբի անապատի ջրապահովվածությունը։ Ջուր ստանալու համար փորվում են 100—150 մետր խորությամբ ջրհորներ։ 1962 թվականին պետության հաշվին երկրում կառուցվել են շուրջ 13 հազար այդպիսի ջրհորներ։

#Մոնղոլիայում այժմ 100 տոկոսով մեքենայացված են վարի, ցանքի և բերքահավաքի աշխատանքները։ Պետական տնտեսություններում և գյուղատնտեսական միավորումներում 1963 թվա-



կանին գործում էին 8 հազար տրակտոր, 2 հազար կոմբայն և գյուղատնտեսական այլ մեքենաներ։

#Նախառևոլյուցիոն Մոնղոլիայում ժողովրդի կուլտուրական մակարդակը շատ ցածր էր՝ երկրում կար ընդամենը մեկ դպրոց, չկային հիվանդանոցներ։

#Այժմ երկրի 428 հանրակրթական դպրոցներում սովորում է 136 հազար աշակերտ։ Համալսարանում, մյուս 9 բուհերում ու 18 տեխնիկումներում սովորում է 21 հազար ուսանող։

#ՄԺՌ-ում այժմ յուրաքանչյուր 1000 բնակչից սովորում է 186 մարդ։ 900 բնակչին ընկնում է մեկ բժիշկ։

#Երկրում հրատարակվում են 23 կենտրոնական թերթ և ամսագիր, որոնց տարեկան տպաքանակը կազմում է 600 հազար օրինակ։ Լույս է տեսնում նաև 19 տեղական թերթ։

#Ծանր էր կնոջ վիճակը մինչև ռևոլյուցիան։ Այժմ ռեսպուբլիկայի կանանց 22 տոկոսն ունի բարձրագույն, 28 տոկոսը հատուկ տեխնիկական կրթություն։

#1921 թվականի նոյեմբերի 5-ին ՌՍՖՍՌ-ի և Մոնղոլիայի միջև կնքվեց բարեկամության և դիվանագիտական հարաբերությունների հաստատման պայմանագիր։ Մոնղոլիայի պատմության մեջ այդ առաջին իրավահավասար պայմանագիրն էր։

#Այժմ ՄԺՌ-ն դիվանագիտական հարաբերություններ է հաստատել ավելի քան 30 պետությունների հետ։

#Տարեցտարի ավելանում է ՄԺՌ-ի արտաքին առևտրական շրջանառությունը։ 1962 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, այն աճել է ավելի քան 30 տոկոսով։

Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի անցած ուղին վառ օրինակ է այն բանի, որ տնտեսապես թույլ զարգացած երկրները կարող են սոցիալիստական երկրների օգնությամբ արագորեն հաղթահարել իրենց հետամնացությունը և կանգնել սոցիալիզմի կառուցման ուղու վրա։

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԺԱՆԴԱՐՄԻ ԺԱՄԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ

Վերջերս ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջոնսոնը հայտարարեց. «Մենք՝ Միացյալ Նահանգներս, երկրագնդի բոլոր անկյուններում համարձակորեն կատարում ենք խաղաղության ժամապահությունը»։ Ամբողջ մարդկությանը լավ հայտնի է, թե իրականում իրենից ինչ է ներկայացնում ամերիկյան «խաղաղության ժամապահությունը»։ Դա ուրիշի հողերում ռազմական բազաների ստեղծումն ու զինվորական կայազորներ պահելն է, ագրեսիվ բլոկների ամրապնդումն ու ընդլայնումը, միջամտությունը այլ պետությունների գործերին, միջազգային լարվածության ուժեղացում...

Ինչ ճիշտ է՝ ճիշտ է։ Չորս տարի առաջ Հարավային Վիետնամում կային անդրօվկիանոսյան 700 «խորհրդատուներ», իսկ այժմ 20 հազարից ավելի են։ Սեպտեմբերի 18-ին Միացյալ Նահանգները Տոնկինյան ծովածոցում կազմակերպեցին նոր պրովոկացիաներ՝ նրանց երկու էսկադրային ականակիրներ կրակ բացեցին Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի դեմ։ ԱՄՆ-ն ուժեղ կերպով ժանդարմական գործողություններ է ծավալում Կոնգոյում։ Ամերիկյան ռմբակոծիչները արդեն մարիոնետ Չոմբեի կողմն անցած մասնակցում են Կոնգոյի հայրենասերների դեմ մղվող մարտերին։ Կիպրոսում յանկիներն առայժմ չեն կրակում, բայց ԱՄՆ-ի 6-րդ նավատորմի նավերն անընդհատ լողում են կղզու ափերից ոչ հեռու։

Այս ամենը վկայում է, որ Ամերիկայի Միացյալ Նահանգներն առաջվա պես իրենց արտաքին քաղաքականությունը վարում են «ուժի դիրքից»։ Այն վարվում է հօգուտ խոշոր մոնոպոլիստների հարստացման, որոնք հույս ունեն զենքի ուժով ետ թեքել պատմության անիվը, իրենց տիրապետությունը հաստատել ամբողջ աշխարհում։

Հենց որ աշխարհի որևէ շրջանում սկսվում է կտրվել իմպերիալիզմի և գաղութակալության շղթան, Միացյալ Նահանգներն շտապում են բոլոր միջոցներով խանգարել դրան։ Իրենց ագրեսիվ, զավթողական պլանների իրականացման համար պենտագոնը երկրա-



գնդի տարբեր անկյուններում պահում է բազմաթիվ զորքեր։ Պաշտոնական տվյալներով 1964 թվականի հուլիսի վերջին ամերիկյան զինված ուժերում եղած 2.694,846 զինվորներից ու սպաներից ավելի քան մեկ միլիոնը տեղաբաշխված են երկրագնդի իննսուն զանազան երկրներում ու շրջաններում՝ 2.230 բազաներում և օբյեկտներում։ Պենտագոնն ամենից շատ զորքեր ունի Արևմտյան Գերմանիայում՝ 250 հազար, Ճապոնիայում և Օկինավայում՝ 90 հազար, Հարավային Կորեայում՝ 40 հազար...

Ամերիկայի Միացյալ Նահանգները ժանդարմի ֆունկցիաները կատարում են իրենց զինված ուժերի բոլոր տեսակների՝ բանակի, ավիացիայի ու նավատորմի օգնությամբ։ Ներկայումս պենտագոնի տրամադրության տակ կա մարտական գործողությունների պատրաստ 16 հետևակային դիվիզիա։ Դրանցից 5-ը, որոնք կազմում են ՆԱՏՕ-ի կմախքը, տեղաբաշխված են Արևմտյան Եվրոպայում, երկուսը պաշտպանում են Հարավային Կորեայի մարիոնետներին, մեկը՝ Տայվան կղզու չանկայշիական թափթփուկներին։ Մնացած ցամաքային դիվիզիաները, չնայած գտնվում են Միացյալ Նահանգներում, նախատեսված են օպերատիվ կերպով աշխարհի այն շրջանները փոխադրելու համար, որտեղ, ինչպես գրում է «Նյու-Յորք Թայմս» թերթը, ծագում են «անկարգություններ», այլ կերպ ասած՝ բարձրանում են ազգային-ազատագրական շարժման ալիքները։

Այդ շարժման դեմ պայքարելու համար Ամերիկայի Միացյալ Նահանգներն արագ տեմպերով ստեղծում են այսպես կոչված «պարտիզանական» զորամասեր, այսինքն՝ պատժիչ ջոկատներ, որոնք կազմված են դիվերսանտներից ու տեռորիստներից։ 1961 թվականի հունվարից սկսած ԱՄՆ-ն այդպիսի զորամասերի թիվը մեծացրել են ութ անգամ։ Ինչպես վերջերս հաղորդվեց անդրօվկիանոսյան մամուլում, «ամերիկյան 344 զինվորական խմբեր 49 երկրներում զբաղված են տեղական զորքերը ներքին պաշտպանության առավել ժամանակակից մեթոդներին նախապատրաստելով»։

Ուրիշի տերիտորիաներում գտնվող ամերիկյան զինված ուժերի սիստեմում ավազակային ջոկատի դերը կատարում է ավիացիան, որը նախ գործում է որպես սպառնալիք, իսկ այնուհետև որպես մահաբեր

զենք։ Ուստի պատահական չէ, որ նրա զգալի մասը տեղաբաշխված է երկրից դուրս։ Եթե երկրի ներսում կան ատոմային ռմբակոծիչների 120 բազաներ, ապա նրա սահմաններից դուրս կառուցված են 270 այդպիսի բազաներ։

Ուրիշի հողերում ժանդարմական գործողություններ կատարելու գործում ամերիկյան իմպերիալիստներն այժմ հատուկ հույս են կապում նավատորմի հետ։ Միացյալ Նահանգներում մշակված են թեորիաներ, որոնք երկրից դուրս պենտագոնի պլանների իրականացման գործում նախապատվություն են տալիս մարտական նավերին։ Ահա, օրինակ, ինչ է գրում ԱՄՆ-ի աչքի ընկնող ծովային տեսաբաններից մեկը՝ Մ. Խելները. «Ռազմածովային ուժերի ճկունությունն ու շարժունակությունը, հնարավորությունների լայն դիապազոնը դրանց դարձնում են արտաքին քաղաքականության շատ արդյունավետ գործիք»։

ԱՄՆ-ի ռազմածովային ուժերը հենց այդ թեորիայի համաձայն էլ բաշխված են աշխարհի շատ շրջաններում։ Արևելքում Միացյալ Նահանգների ժանդարմական ֆունկցիաների գլխավոր կատարողն է 7-րդ նավատորմը։ Ինչպես խոստովանում է ամերիկյան «Ֆորչուն» ժուռնալը, այդ նավատորմը «ինքնուրույն և միշտ գործողության պատրաստ ուժ է ճնշման այն գծի առաջավոր դիրքերում, որն ընդգրկում է Ճապոնիան, Կորեան, Ֆորմոզան, Ֆիլիպինները, ինչպես նաև Հարավ-Արևելյան Ասիայի նոր զարգացող երկրները»։ Խաղաղ օվկիանոսի ծովահեններից ետ չեն մնում նաև Միջերկրական ծովի ջրերն ակոսող ամերիկյան ռազմանավերը։ Ինչպես գրում է «Բիզնես ուիկ» ժուռնալը, այդ նավատորմը «դարձել է... Արևմուտքի՝ երկաթե դիվանագիտական բռունցքը, նրա մեծ մահակը»։

1957 թվականից ԱՄՆ-ն սկսեցին վերջրյա նավատորմը համալրել ատոմային սուզանավերով։ Այժմ վերջիններս ժամապահություն են անում ՆԱՏՕ-ի մասնակից մի շարք պետությունների ափերին։ Պենտագոնի գեներալները նախատեսում են մինչև այս տարվա վերջը այլ երկրների տերիտորիալ ջրերում տեղաբաշխել տասնվեց սուզանավեր, որոնք բոլորը միասին կունենան «պոլարիս» կոչվող 256 հրթիռներ։

## ՀՐՇԵՋՆԵՐԻ ԴԵՐՈՒՄ

ԱՄՆ-ի սահմաններից դուրս գտնվող զորքերի ու



բազաների նպատակը որոշվում է հենց ամերիկյան իմպերիալիզմի բնույթով, որը հետպատերազմյան ժամանակաշրջանում ստանձնել է կապիտալիստական կարգի, իսկ նրանց բառերով ասած՝ «ազատ աշխարհի» «փրկարարի» դերը։

**Առաջին.** ԱՄՆ-ն ուրիշի հողերում ռազմական բազաներ է կառուցել ու կառուցում է, այդտեղ զորքեր ու զենք է տեղաբաշխում, որպեսզի կարողանա հանկարծակի հարձակում կատարել խաղաղասեր երկրների, և առաջին հերթին սոցիալիստական լագերի պետությունների վրա։ Այդ մասին է վկայում այն փաստը, որ հիմնական ռազմական բազաները, որոնց թիվն այժմ հասնում է 200-ի, տեղաբաշխված են Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների ամբողջ սահմանի երկայնքով։

Այն, որ ամերիկյան «կատաղիները» անդադար հորինում են սոցիալիզմի լագերի վրա հարձակվելու պլաններ, դա հաստատվում է նաև ռեսպուբլիկական պարտիայի ծրագրով, որը պահանջում է «բոլոր միջոցներով կոմունիստական տիրապետությունից ազատել Արևելյան Եվրոպան, Ասիան ու Լատինական Ամերիկան»։

**Երկրորդ.** ԱՄՆ-ի զինված ուժերը, ուրիշի տերիտորիաներում նրա բազաները պենտագոնին պետք են ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման դեմ պայքարելու, հակաժողովրդական դավադրություններ կազմակերպելու համար։

ԱՄՆ-ն ռազմական բազաներն օգտագործում է որպես իմպերիալիզմի ու գաղութակալության լծից ազատագրված կամ իրենց անկախության համար պայքարող երկրների վրա հարձակվելու պլացդարմ։ Այսպես, ամերիկյան իմպերիալիստները Գուանտանամոն՝ Կուբայի այդ դարավոր տերիտորիան, դարձրել են հերոսական կուբայական ժողովրդի դեմ զանազան պրովոկացիաներ կազմակերպելու օջախ։ Լիբիայում գտնվող Ուիլուս-Ֆիլդ բազայով ԱՄՆ-ն ամերիկյան ու բելգիական զորքեր է փոխադրում Կոնգո։

Այլ պետություններում գտնվող յանկի-զինծառայողները իրենց պահում են ինչպես նվաճողներ, ավազակներ։ Ամերիկյան զինվորներն ու սպաներն ուրիշի հողերում ամեն տարի կատարում են ավելի քան տաս հազար հանցագործություն։ «Չի անցնում մի օր,— գրել է լիբիական «Ար-Ռաիդ» թերթը,— որ տեղի չու-

նենա որևէ դժբախտություն. կամ երեխա է սպանվում,
կամ բանվոր է վիրավորվում, կամ կին է խայտառակ-
վում: Եվ այդ ամենն ու՞մ մեղքով: Ամերիկյան զինվոր-
ների, ամերիկյան ռազմական բազայի ծառայողների
մեղքով»:

Բայց զինվորական համազգեստով յանկիները ոչ
միայն կողոպտում ու սպանում են անմեղ մարդկանց,
այլև ծաղրում են ժողովուրդների ազգային զգացմունք-
ները: Ահա բազմաթիվ փաստերից մի քանիսը: Երբ
օլիմպիական կրակը բերող սպորտսմենները սեպտեմ-
բերի 7-ին մոտենում էին ճապոնական Կոձա քաղաքի
գլխավոր փողոցներից մեկին, ամերիկյան երեք զինծա-
ռայողներ կտրեցին մի քանի դրոշաձողեր և դրանցից
պոկեցին Ճապոնիայի դրոշակները: Նրանք նույնն ա-
րեցին Յասունամի և Կինոձա քաղաքներում: Իզմիրում
գտնվել են ամերիկյան զինծառայողների նամակներ,
որոնցում նրանք վիրավորական բաներ են գրել թուրքե-
րի ազգային սովորույթների մասին: Դա վրդովեցրել է
նույնիսկ այնպիսի բուրժուական թերթի, ինչպիսին է
«Ենի սաբահ»: Թուրք ժուռնալիստը զայրույթով գրել
է. «Մենք ի՞նչ արեցինք այդ ամերիկացիներին: Նրանք
բռնաբարում են մեր աղջիկներին և սպեկուլյացիա են
անում հատուկ խանութներում գնված իրերով: Նրանք
արժանի պատիժ չեն ստանում, երբ իրենց մեքենանե-
րի տակն են գցում մեր երեխաներին: Նրանք զբաղված
են վալյուտայի մաքսանենգությամբ, կռիվներ են սար-
քում գիշերային ակումբներում: Նրանք պատռում են
մեր դրոշակները: Նրանց ձեռքում են գտնվում մեր ա-
մենալավ տները...»:

Աշխարհի ժողովուրդների մեջ առանձնապես տագ-
նապ են առաջացնում ԱՄՆ-ի սահմաններից դուրս
գտնվող ամերիկյան զորքերի զինավարժությունները:
Անցյալ տարի ամերիկյան ինքնաթիռից նետված
ռումբն ընկավ ճապոնական գյուղերից մեկի վրա: Քիչ
չեն դեպքերը, երբ զինավարժությունների ժամանակ
զոհվում են տասնյակ ու հարյուրավոր մարդիկ: Ամե-
րիկյան զինվորականությունն ամենևին էլ հաշվի չի
առնում տեղական բնակիչների շահերը, երբեմն նրանց
արտաքսում են իրենց բնակավայրերից, թողնում առանց
գոյության միջոցների:

## ԱԳՐԵՍԻԱՅԻ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Բազմաթիվ փաստեր բացահայտում են այն վտան-





գը, որ ժողովուրդներին սպառնում են ուրիշի տերիտո-
րիաներում գտնվող ամերիկյան զինված ուժերը: Այդ է
պատճառը, որ հասարակ մարդիկ անդուլ պայքար են
մղում իրենց երկրներից ԱՄՆ-ի զորքերը դուրս բերե-
լու, նրանց ռազմական բազաները վերացնելու համար:
Այդ շարժումը հատկապես լայն թափ է ստացել վերջին
տարիներս: Այն ընդգրկել է շատ երկրներ՝ Անգլիայից
ու Լիբիայից սկսած մինչև Ճապոնիա և Լատինական
Ամերիկայի երկրները:

Միացյալ Նահանգների և նրանց դաշնակիցների ագ-
րեսիվ գործողությունների դեմ իրենց պայքարում երկ-
րագնդի ժողովուրդները հենվում են մեծ Սովետական
Միության, սոցիալիզմի լագերի վրա, որոնք իսկապես
կանգնած են խաղաղության դիրքերում: Ուժեղացնե-
լով իրենց տնտեսական ու ռազմական հզորությունը,
հետևողականորեն իրականացնելով խաղաղ գոյակցու-
թյան քաղաքականությունը, սովետական պետությունը
և մյուս սոցիալիստական երկրները դրանով իսկ բարե-
նպաստ պայմաններ են ստեղծում հանուն քաղաքական
ու տնտեսական անկախության ժողովուրդների պայ-
քարի համար:

Սակայն ԱՄՆ-ը և ագրեսիվ բլոկների նրա դաշնա-
կիցները չհետևեցին մեր երկրի օրինակին: Ձգտելով
իրենց համար պահպանել ստրատեգիական դիրքեր,
նրանք շարունակ հանդես են գալիս ուրիշի տերիտո-
րիաներից իրենց զորքերը դուրս բերելու և ռազմական
բազաները վերացնելու դեմ: Դա Սովետական պետու-
թյանը հարկադրում է անշեղորեն իրականացնել Վար-
շավայի պայմանագրով նախատեսված միջոցառումնե-
րը, իր տիրապետության տակ պահել որոշ տերիտորիա-
ներ, որոնք ՍՍՌՄ-ին են անցել իմպերիալիզմի ագրե-
սիվ գործողություններից մեր երկրի պաշտպանու-
թյունն ամրապնդելու համար:

Երկրագնդի ժողովուրդների արմատական շահերը
հրամայաբար պահանջում են վերացնել ուրիշի տերի-
տորիաներում գտնվող ամերիկյան ռազմական բազա-
ները, այդտեղից դուրս բերել ԱՄՆ-ի զորքերը: Դա
անհրաժեշտ է մեր մոլորակում ընդհանուր խաղաղու-
թյուն պահպանելու համար:



Ն. ԲԵԼՈՌՈՒՍՈՎ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Լենինյան պարտիայի գլխավոր գիծը՝ մեր երկրում կոմունիզմի կառուցման անսասան հիմքն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ, *Երկեր, հ. 31, էջ 95—114։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Կոմունիստական ինտերնացիոնալի 2-րդ կոնգրեսը, *Երկեր, հ. 31, էջ 290։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը, *էջ 7—40, Հայպետհրատ, 1961։*

*Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ*— Լենինյան կուրսով դեպի կոմունիզմի հաղթանակը. *Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 47-րդ տարեդարձի առթիվ տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 7-ի համարում։*

Կոմունիզմ կառուցողների մեծ դրոշը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 4-ի համարում։*

## 2. ՍՄԿՊ-ի պայքարը միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության համար

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ, *Երկեր, հ. 31, էջ 18—28։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Նամակ եվրոպայի և Ամերիկայի բանվորներին, *Երկեր, հ. 28, էջ 558—568։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Զեկուցում Արևելքի ժողովուրդների կոմունիստական կազմակերպությունների համառուսաստանյան II համագումարում, *Երկեր, հ. 30, էջ 174—190։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը, *էջ 41—52, Հայպետհրատ, 1961։*

## 3. Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը մեր էկոնոմիկայի գլխավոր խնդիրն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Ֆ. ԷՆԳԵԼՍ*— Կոմունիզմի սկզբունքները, *առանձին գիրք, էջ 13, Հայպետհրատ, 1955։*



*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա, *Երկեր, հ. 22, էջ 352—408։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— 1923 թվականի հոդվածները, *Հայպետհրատ, 1953։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը, *էջ 7—12, 21—29, 74—171, Հայպետհրատ, 1961։*

## 4. Աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը կոմունիզմի կառուցման գլխավոր պայմաններից մեկն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Կոմունիստական դաստիարակության մասին, *առանձին գիրք, Հայպետհրատ, 1958։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Երիտասարդության միությունների խնդիրները, *ճառ Ռուսաստանի կոմունիստական երիտասարդության միության համառուսաստանյան III համագումարում, Երկեր, հ. 31, էջ 343—366։*

*Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ*— Երիտասարդության մասին, *Հայպետհրատ, 1944։*

ՍՄԿՊ ծրագիրը, *էջ 139—156, Հայպետհրատ, 1961։*

Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հոկտեմբերի 10-ի համարում։*

## 5. ՍՍՌՄ-ում կոմունիստական շինարարության միջազգային նշանակությունը և նրա ազդեցությունը համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ, *Երկեր, հ. 31, էջ 1—131։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— ՌԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի քաղաքական հաշվետվությունը պարտիայի XI համագումարին, *Երկեր, հ. 33, էջ 307—383։*

*Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ*— Մեծ Հոկտեմբերի համաշխարհային պատմական հաղթանակները, *Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 47-րդ տարեդարձի առթիվ տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 7-ի համարում։*

## 6. Կոմունիստների ինտերնացիոնալ պարտքն է ամրապնդել սոցիալիստական պետությունների միասնությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. Լենին*— Պետություն և ռևոլյուցիա, *Երկեր, հ. 25, էջ 491—642։*

*Վ. Ի. Լենին*— «Դեմոկրատիայի» և դիկտատուրայի մասին, *Երկեր, հ. 28, էջ 475—481։*

*Վ. Ի. Լենին*— Սովետական պետական ապարատի աշխատանքի մասին, *Հայպետհրատ, 1956։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը, *էջ 122—131, Հայպետհրատ, 1961։*

Կոմունիզմի և խաղաղության համար մղվող պայքարի ավանգարդում, *«Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 11-ի համարում։*

## 7. Սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը սոցիալիստական երկրների արտաքին քաղաքականության գլխավոր գիծն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. Լենին*— «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ, *Երկեր, հ. 31, էջ 5—8, 95—114։*

*Վ. Ի. Լենին*— Թեզիսներ կոմունիստական ինտերնացիոնալի երկրորդ կոնգրեսի հիմնական խնդիրների մասին, *Երկեր, հ. 31, էջ 215—238։*

*Վ. Ի. Լենին*— Հոկտեմբերյան ռևոլյուցիայի չորսամյա տարեդարձի առթիվ, *Երկեր, հ. 33, էջ 37—48։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը *էջ 21—28, 159—163, Հայպետհրատ, 1961։*

## 8. ՍՄԿՊ XX, XXI, XXII համագումարների պատմական նշանակությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ XX, XXI և XXII համագումարների բանաձևերը, *Հայպետհրատ, 1956, 1959, 1961։*



ՍՄԿՊ ծրագիրը, *Հայպետհրատ, 1961։*

Անձնի պաշտամունքի և նրա հետևանքների հաղթահարման մասին, ՍՄԿՊ Կենտկոմի որոշումը, *Հայպետհրատ, 1956։*

Լենինյան կուրսով, «Պրավդա» թերթի առաջնորդողը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 12-ի համարում։*

## 9. Սովետական ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացումը մեր պարտիայի ներքին քաղաքականության գլխավոր խնդիրն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը, *Հայպետհրատ, 1961։*

ՍՄԿՊ XX, XXI և XXII համագումարների բանաձևերը, *Հայպետհրատ, 1956, 1959, 1961։*

Անսասան հավատարմություն ժողովուրդների շահերին, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. նոյեմբերի 14-ի համարում։*

## 10. Սովետական ժողովրդի նախաձեռնության և ինքնագործունեության զարգացումը կոմունիզմի կառուցման կարևորագույն պայմաններից մեկն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. Լենին*— Մեծ նախաձեռնություն, *Երկեր, հ. 29, էջ 501—533։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը, *Հայպետհրատ, 1961։*

ՍՄԿՊ XX, XXI և XXII համագումարների բանաձևերը, *Հայպետհրատ, 1956, 1959, 1961։*

## 11. Սովետական դեմոկրատիայի ըստ ամենայնի ծավալումը մեր պարտիայի ներքին քաղաքականության գլխավոր խնդիրներից մեկն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. Լենին*— Պետություն և ռևոլյուցիա, *Երկեր, հ. 25։*

*Վ. Ի. Լենին*— «Դեմոկրատիայի» և դիկտատուրայի մասին, *Երկեր, հ. 28, էջ 475—481։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը, *էջ 119—122, Հայպետհրատ, 1961։*

# ԱՇԽԱՐՀԻ ԵՐԿՐՆԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

| Երկիր | Տարածությունը (հազար քառակուսի կիլոմետրով) | Բնակչությունը (միլիոն մարդ) | Մայրաքաղաքը |
|---|---|---|---|
| 1. Ավստրալիական Միություն | 7700 | 10,9 | Կանբերա |
| 2. Ավստրիա | 83,9 | 7,17 | Վիեննա |
| 3. Ալբանիա (Ժողովրդական Ռեսպուբլիկա) | 28,7 | 1,71 | Տիրանա |
| 4. Ալժիր | 2,205 | 10,453 | Ալժիր |
| 5. Անդորա | 465 քկմ. | 10,5 հ. | Անդորա-լա-Վելյա |
| 6. Արգենտինա | 2809 | 21.762 | Բուենոս-Այրես |
| 7. Աֆղանստան | 650 | 13,8 | Քաբուլ |
| 8. Ամերիկայի Միացյալ Նահանգներ | 9364 | 192 | Վաշինգտոն |
| 9. Բելգիա | 30,5 | 9,22 | Բրյուսել |
| 10. Բիրմայական Միություն | 677,6 | 23,664 | Ռանգուն |
| 11. Բուլղարիա | 110,8 | 8,111 | Սոֆիա |
| 12 Բոլիվիա | 1099 | 3,596 | Սուկրե Լա-պաս |
| 13. Բրազիլիա | 8514 | 77,521 | Բրազիլիա |
| 14. Բուրունդի | 28 | 2,6 | Ուսումբուրա |
| 15. Գաբոն | 267 | 0,5 | Լիբրևիլ |
| 16. Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկա | 248 | 57,865 | Բոնն |
| 17. Գանա | 238 | 7,148 | Աքրա |
| 18. Գվատեմալա | 131 | 4,095 | Գվատեմալա |
| 19. Գվինեա | 246 | 3,357 | Կոնակրի |
| 20. Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկա | 108,3 | 17,079 | Բեռլին |
| 21. Հոնդուրաս | 112 | 2.008 | Տեգուսիգալպա |
| 22. Դահոմեա | 112 | 2,2 | Պորտո-Նովա |
| 23. Դանիա | 43 | 4,654 | Կոպենհագեն |
| 24. Դոմինիկյան Ռեսպուբլիկա | 48,7 | 3,334 | Սանտո-Դոմինգո |
| 25. Իեմենի Արաբական Ռեսպուբլիկա | 195 | 5 | Սանա |
| 26. Եթովպիա | 120 | 20 | Ադիս-Աբեբա |
| 27. Էկվադոր | 271 | 4,726 | Կիտո |
| 28. Թունիս | 125 | 4,494 | Թունիս |
| 29. Թուրքիա | 767 | 30,256 | Անկարա |
| 30. Իսրայել | 20,7 | 2,376 | Թել-Ավիվ |
| 31. Ինդոնեզիա | 1904 | 97 | Ջակարտա |
| 32. Հորդանան (Հորդանանի Հաշիմիթական Թագավորություն) | 97 | 1,827 | Ամման |
| 33. Իրաք | 444 | 6,732 | Բաղդադ |
| 34. Իրան | 1630 | 22,182 | Թեհրան |
| 35. Իռլանդիա | 70 | 2.841 | Դուբլին |
| 36. Իսլանդիա | 103 | 0,182 | Ռեյկյավիկ |
| 37. Իսպանիա | 503 | 31,077 | Մադրիդ |
| 38. Իտալիա | 301 | 50,619 | Հռոմ |
| 39. Լաոս | 237 | 2,3 | Վիենտյան |
| 40. Լիբերիա | 111 | 2,75 | Մոնրովիա |
| 41. Լիբանան | 10 | 1,75 | Բեյրութ |
| 42. Լիբիա | 1.760 | 1,559 | Տրիպոլի և Բենգազի |
| 43. Լիխտենշտեյն | 0,158 | 0,017 | Վադուց |
| 44. Լյուքսեմբուրգ | 2,6 | 0,319 | Լյուքսեմբուրգ |
| 45. Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկա | 312 | 30,857 | Վարշավա |
| 46. Կամբոջա | 181 | 5,749 | Պնոմ—Պեն |
| 47. Կամերուն | 475 | 5 | Յաունդե |
| 48. Կանադա | 9974 | 18,928 | Օտտավա |
| 49. Կիպրոս | 9,251 | 0,589 | Նիկոզիա |
| 50. Կոլումբիա | 1138 | 15,098 | Բոգոտա |
| 51. Կոնգո | 2345 | 15,007 | Լեոպոլդվիլ |
| 52. Կոնգո | 342 | 0.9 | Բրազավիլ |
| 53. Կորեական Ժողովրդական Ռեսպուբլիկա | 127 | 11 | Փխենյան |
| 54. Կոստա—Ռիկա | 51 | 1,338 | Սան—Խոսե |

(Շարունակելի)

## Սպիրիտիզմ

Սպիրիտիզմը ռեակցիոն ուսմունք է, որը տարածված է կապիտալիստական երկրներում, հատկապես ԱՄՆ-ում և Անգլիայում։ «Սպիրա» բառը լատիներեն նշանակում է ոգի։ Ըստ այդ ուսմունքի գոյություն ունեն մեռածների ոգիներ, որոնք կարող են երևալ մարդկանց։ ԱՄՆ-ում ներկայումս կան բազմաթիվ սպիրիտիստական համայնքներ, որոնք ունեն իրենց եկեղեցիները, թերթերն ու ամսագրերը։ Թերթերում և ամսագրերում տպագրվում են մի խումբ խաբեբաների կողմից հորինված, այսպես կոչված, ոգիների աշխարհից ստացված տեղեկություններ և այդ խաբեության միջոցով փող վաստակում։ Ոչ հեռու անցյալում ամերիկյան մի շարք թերթերում սենսացիոն տեղեկություն էր տպագրվել այն մասին, թե իբր վախճանված նշանավոր կինոարտիստներ Ռուդոլֆ Վալենտինոյի և Դուգլաս Ֆերբենքսի ոգիները մեռելահարցուկների մասսայական սեանսի ժամանակ խոստացել էին ներկա գտնվել այն կինոթատրոնում, որտեղ պետք է ցուցադրվեին իրենց մասնակցությամբ նկարահանված ֆիլմերը։ Այդ խաբեության միջոցով, այսինքն սպիրիտիզմի միջոցով, կինոսեփականատերերին հաջողվում է նորից ցուցադրել հին և արդեն մոռացված կինոֆիլմերը ու մեծ գումար կորզել հանդիսատեսներից։ Անգլիայում սպիրիտիստական համայնքները, որոնք ընդգրկված են «մեռելահարցուկների ազգային միության» մեջ, մասսայական «հանդիպումներ» են կազմակերպում Անգլիայի պատմական ականավոր դեմքերի հետ, խորհուրդներ հարցնում նրանցից՝ երկիրը ծանր վիճակից հանելու նպատակով։

## Անչա

Անչա է անվանվում, այսպես կոչված, անհայրենիք հայերի օգնության ամերիկյան ազգային կոմիտեն։ Դա իրականում հայ ժողովրդի դավաճանների և ամերիկյան հետախուզության ծախու գործակալների մի բանդա է, որը ստեղծվել է տխրահռչակ դաշնակների կողմից՝ ամերիկյան իմպերիալիզմին ծառայելու նպատակով։

Անչա-ի գործակալները ներկայումս ԱՄՆ արտագաղթող հայերին «օգնելու» պատրվակով սոցիալիստական երկրների և ամենից առաջ Սովետական Հայաստանի դեմ լրտեսական ու քայքայիչ աշխատանք են կատարում։

## «Ֆոսեր»

«Ֆոսեր» ֆրանսերեն բառ է, որ նշանակում է նկարներ կեղծող, այսինքն ավազակություն արվեստի մեջ։ Ֆոսեր բառը շատ է գործածվում Արևմուտքի երկրներում, հատկապես Հոլանդիայում, Ֆրանսիայում, Անգլիայում, ԱՄՆ-ում։ Նշված երկրներում շատ փաստեր են հայտնի, երբ դրամ շորթելու նպատակով ֆոսերները կեղծել են համաշխարհային նշանակություն ունեցող ստեղծագործությունները (յուղանկարները) և դրանք բարձր գներով վաճառել թանգարաններին։



# ԿԱՐԴԱՑԵՔ ԱՅՍ ԳԻՐՔԸ

Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության վերականգնման շրջանի տեղական թերթերի պատմությանն է նվիրված Վ. Ամիրբեկյանի «Սովետահայ տեղական մամուլը» աշխատությունը, որ լույս է տեսել վերջերս ՀՍՍՌ գիտությունների ակադեմիայի հրատարակությամբ։

Ժողովուրդների ինտերնացիոնալ ընտանիքում իր նոր կյանքն էր կառուցում նաև հայ աշխատավորը, լուսավորվում էր գյուղը, գավառը։ Տեղական թերթերը, լինելով բոլշևիկյան տիպի մամուլի բաղկացուցիչ մասը, ստեղծվում էին Հայաստանի կոմունիստական պարտիայի Կենտկոմի և գավառային կոմիտեների նախաձեռնությամբ, արտահայտում էին խավարի իշխանությունից ազատագրվող աշխատավորների խոհերն ու ձգտումները։

Թերթերի և արխիվային ընդհանուր նյութերի ուսումնասիրության հիման վրա հեղինակը գրքում վեր է հանել այն բեղմնավոր աշխատանքը, որ տարել են պարտիայի գործին անսահման նվիրված գործիչները, առաջին խմբագիրներ Ա. Շահգելդյանը, Լ. Թովմասյանը, Հ. Բանահյանը, Ա. Մուրադյանը, Կ. Ղազարյանը, Գ. Մեհրաբյանը, Սիմակը (Մաճկալ Շմավոն), Հ. Գյուլիքեխվյանը, Գ. Ղազարյանը, Թ. Մանդալյանը, Վ. Խերանյանը և ուրիշներ։ Հանգամանորեն վերլուծված է Էջմիածնի «Կարմիր գյուղացի», Ալեքսանդրոպոլի «Կարմիր Շիրակ», ապա «Շիրակի ռանչպար», «Բանվոր», Լոռվա «Կարմիր Լոռի», Նոր Բայազետի «Ռանչպար», Զանգեզուրի «Խորհրդային Զանգեզուր», ապա «Կարմիր ռանչպար» թերթերի աշխատանքը։

Հեղինակն արժեքավորել է յուրաքանչյուր թերթի գործունեությունը, ցույց տալով, թե այն ինչպես է արտացոլել սովետական իշխանության առաջին տարիների էկոնոմիկայի վերականգնման, կուլտուրական ռևոլյուցիայի և սոցիալիստական շինարարության մյուս խնդիրների կենսագործման համար պայքարը։

Մանրակրկիտ հետազոտությունների հիման վրա ցույց է տրված, թե գավառական թերթերն ինչպիսի խոշոր դեր են կատարել պարտիայի առաջադրած հրատապ խնդիրների կենսագործման, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների պրոպագանդման գործում։

Գրքի չորրորդ գլուխը նվիրված է աշխատավորության գեղարվեստական դաստիարակությանը։ Հեղինակը այստեղ պատմում է ոչ միայն գեղարվեստական դաստիարակության նշանակության ու դերի մասին ընդհանրապես, այլև թերթերում հրապարակված գրական տարբեր ժանրերի ստեղծագործությունների վերլուծության միջոցով ցույց տալիս, թե տեղական թերթերը ինչպես էին նպաստում սովետահայ գրականության զարգացմանը։

Գրքում տրվում են հետաքրքիր ծանոթագրություններ թերթերի խմբագիրների, հրատարակման վայրերի վերաբերյալ։

ԻՆԴԵՔՍ՝ 77704



**ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ**

# Агитатори блокнот

## № 22
## 1964


Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

*ՎՖ 10627* *Պատվեր 1135* *Տիրաժ 8938*

*Հանձնված է արտադրության 16/XI 1964 թ.։*
*Ստորագրված է տպագրության 23/XI 1964 թ.։*

*ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան։*

*Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 8 կոպ.։*